


1917

№ 11—Մարտ 19

ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ


# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ


ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ

Լոյս է տեսնում կիրակի օրերը

10 կոպէկ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման, տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտասարդեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амба: ...еръ“. Tiflis, Rédaction du journal „Hamoavaber“.

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերի

Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար Թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարւում գրաւոր բացատրութիւններ տալ։


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ.—Ի՞նչ է պահանջում վայրկեան. Ս. Յարութիւնեանցի՝ Նուէրներ «Համբաւաբերի» տարածմանը համար։ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ, ՆԵՐՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ.—ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔԸ.—Ժողովրդապետական Ռուսաստանը, Վ. Խորէնու.—Ռուսաստանի յեղափոխութիւնը.—Զկրկնենք սխալներ Գ. Ենգիբարեանի.—Հաշուետուութիւն մի օրինակելի հոգեորականի, Սկայի.—Վաղուայ հայ գիւղը, Ա. Մաքսապետեանի.—Տրապիզոնի Հայկական Կոմիտէ.—ԳԱՒԱՌ.—Ախալցխա. Թեմիր-Խան-Շուրա.—ՏԱՐԵԳԻՐ Կ. Հ, ԸՆԿ. (Կ. Հ. Բ. Ընկերութիւն. Հ. Կ. Կոմիտէ և Պարենաւորման բաժանմունքը պետական միջոցներով), ՔՐՈՆԻԿՈՆ.—ԱՐՏԱՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ.—Նամակ Լոնդոնից.—Ա. Սաֆրաստեանի.—ՏԱՃԿԱՀԱՅԵՐ.—Զգուշացէք, հայեր.—ԳԵՂԱՐՈՒԵՍՏ.—Կապոյտ աղջիկ (բանաստեղծ.) Ազատ Վշտունու—ԹԱՏՐՈՆ.—Գաբրիէլ Սունդուկեան, Իշխ. Գ. Մ. Թումանեանի.—ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ,


## Ի՞ՆՉ Է ՊԱՀԱՆՋՈՒՄ ՎԱՅՐԿԵԱՆԸ

Ժողովրդական խանդավառութիւնը շարունակւում է ամենուրեք։

Ոգևորութիւն ու ցնծութիւն է տիրում բոլոր շըրջաններում և վայրերում։

Եւ այդ բոլորը շատ բնական է ու հասկանալի։

Ռուսաստանի բազմամիլլիոն ժողովուրդը երկար դարերի ընթացքում եղել է կաշկանդուած, զուրկ ազատութեան ամենաչնչին նշոյլից. նա սերնդից-սերունդ ձըգտել է, զոհեր տալով, դէթ չափաւոր իրաւական դիրք և դրութիւն ստեղծելու, բայց համարեա ամեն մի փորձ վերջացել է դառնութեամբ և անյաջող։

Միակ վայրկեանը, երբ ժողովրդի պահանջն ստացաւ համեստ բաւարարութիւն,—այդ 60-ական թուականներն էին։ Ալէքսանդր II կայսրը նկատելով, որ ապօրինութիւնը դարձել է անսահման, ըմբռնեց ժամանակի պահանջը և օրինական եղանակով ոչնչացրեց ճորտութիւնն ու մտցրեց նոր դատաստանական կարգեր, յայտարարելով իրաւունքների հաւասարութիւն օրէնքի առաջ։ Այս երկու գործողութիւնները թէև խոշոր պատմական երևոյթներ էին, սակայն գործնական տեսակէտից առանձին հետևանք չունեցան, շնորհիւ այն հանգամանքի, որ գիւղացին ստացաւ անձի ազատութիւն առանց հողի, որ կրկին մեծ մասամբ մնաց կալուածատիրոջ ձեռում, իսկ գիւղացին մնաց կալուածատիրոջից կախուած, հարստահարուած ու ճնշուած։

Բացի այս կառավարութեան յետադէմ քաղաքականութիւնն էլ մինչև 1900 թուականները անընդհատ ձգտել է կրճատել և աղաւաղել նոյն իսկ յիշեալ չափաւոր ազատութիւնները։

Ժողովրդի միահամուռ բողոքներն ու տրտունջներ մի կողմից, յեղափոխականների համարձակ և Ներքաղա[կան] (stain) (ակտիւ) գործողութիւնները միւս կողմից վերջապէս ստիպեցին կառավարութեանը գիջել և հնազանդուել ժամանակի հրամայողական պահանջների առաջ։

Եւ այժմեան գահազուրկ Նիկոլայ Թագաւորը 1905 թուի հոկտեմբերի 17-ին տուեց Ռուսաստանին սահմա-

նադրութիւն և հաստատեց Պետական Դումա, իբր բարձր օրէնսդրական հիմնարկութիւն, այսու սահմանափակելով առաջուայ միապետական անսահման իրաւունքները։

Այդ դէպքի առիթով կատարուած ժողովրդական ցոյցերն ու ուրախութեան հանդէսները փայլուն ապացոյց էին, թէ որքան հասունացած էր խնդիրը և թէ ինչպէս ժողովուրդը կը փափագէր տեսնել այդ օրը։

Ժողովուրդների ոգևորութիւնը երկար չտևեց։ Կառավարութիւնը չմոռացաւ իւր հակաժողովրդական քաղաքականութիւնը։

Նա, բաղկացած լինելով միապետական կարգի (ռէժիմի) երկրպագուներից և այդ ոգով տոգորուած անձերից, չկարողացաւ հաշտ աչքով նայել նոր կարգերին և, սրտապնդուած Նիկոլայ Թագաւորի կողմից, շատ շուտ սկսեց ոտնձգութիւններ և հալածանքներ. ապօրինի կերպով ընդհատում էր Դումայի պարապմունքները, նշանակում էր նոր ընտրութիւններ, ենթադրելով, իբր թէ նոր ընտրութիւնը կը տայ աջակողմեան պատգամաւորներ աւելի մեծ թուով. օգտուելով օրէնքի 87-րդ յօդուածից հրատարակում էր առանց Դումայի նոր օրէնքներ և այլն։

Այս անիմաստ և չարամիտ քաղաքականութիւնը, ի հարկէ, երկարատև լինել չէր կարող. որ ինքն իւր համար գերեզման փորեց, ինքն իրեն մահուան դատապարտեց և վճիռը անողորմ կերպով կատարուեց այս մարտի 2-ին, երբ բռնակալ, սոխուղնիկների սիրտ և ոգին ներկայացնող Նիկոլայ Թագաւորը զրկուեց իւր գահից, ստիպուած ստորագրելով իւր հրաժարականը Պսկով քաղաքում։

Այժմ բարձր կառավարութեան ղեկը անցել է մի մարմնի, որը բաղկացած է Ռուսաստանի ամենաժողովրդական և ամենանշանաւոր դէմքերից։ Մօտ ապագայում էլ կը կազմուի համառուսական սահմանադիր ժողով՝ որոշելու Ռուսաստանի քաղաքական կազմը, որի գուշակելը արդէն դժուար չէ այժմ։ Արդէն շատ շրջաններ և մամուլի ազդեցիկ մասը միաբերան պնդում են, որ Ռուսաստանում պէտք է հաստատել դեմոկրատիկ հանրապետութիւն։

Իսկապէս ուրիշ տեսակ մտածելն անգամ շատ տարօրինակ կը լինէր։ Մեծ պատմական սխալմունք կատարուած կը լինի, եթէ չընդունուի հանրապետական կազմը և փորձուի վերադառնալու սահմանադրական պետական ձևին, թէկուզ պատասխանատու նախարարութեամբ։

Ռոմանովների կայսերական տան հարցը պէտք է համարել վերջնականապէս սպառուած և խնդիրը փակել ընդմիշտ։

Հանրապետական կազմը համապատասխան է Ռուսաստանին, մանաւանդ եթէ ի նկատի առնուի վերջինիս, միջի այլոց, ազգագրական կազմը և աշխարհագրական [...]քը։

Այդ հարցի մասին արտայայտուելու համար դեռ ժամանակ կայ, քանի որ խնդիրը իւր լուծումն ստանալու է սահմանադիր ժողովում։ Այժմ աւելի կարևոր է մտածել և հոգալ, որ ժամանակաւոր բարձր կառավարութիւնը իւր հեղինակաւոր դրութեան մէջ հաստատուն մնայ և նոր կարգերը ամրապնդուեն, որի համար հարկաւոր է, որ երկրի մէջ պահպանուի կարգ եւ խաղաղութիւն, եւ որ արտաքին թշնամին յաղթուի։ Երկրի մէջ խաղաղութիւն պահպանելու համար հարկաւոր է, որ ազգերի մէջ լինի փոխադարձ հաւատք եւ համերաշխութիւն, և աջակցութիւն նոր կառավարութեան, որպէսզի սա էլ իւր պատասխանատու առաքելութիւնը (միսիան) յաջողութեամբ կատարի։

Ազգային, դասակարգային եւ այլ համանման խնդիրների յարուցում վաղաժամ է. այդ հարցերը պէտք է թողնել ապագային, երբ նոր կարգերը դրուած կը լինեն հաստատուն հողի վրայ, երբ հակայեղափոխական շարժման սպառնալիքը վերացուած կը լինի և, վերջապէս, երբ հզօր թշնամու ոյժերը ոչնչացրուած կը լինեն, կամ բաւականին թուլացուած ու անվտանգ դարձուած։

Ահա թէ ինչ է պահանջում վայրկեանը ամեն մի գիտակից և ազնիւ քաղաքացուց։

Ս. Յարութիւնեանց

## ՆՈՒԷՐՆԵՐ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐԻ» ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

Շնորհակալութեամբ ստացուած է պ. Մկրտիչ Քալանթարեանից յօգուտ «Համբաւաբերի» տարածման 100 ռուբլի։

— Խմբագր. ստացել է Հին-Նախիջևանի վաճառական Արշակ Կիրակոսեան Մովսիսեանից տաս օրինակ «Համբաւաբերի» գին 40 ռ., 1 օրինակ իրեն, մի-մի օրինակ էլ Հին-Նախիջևանի Աստաբադ, Կարախանբէկլու, Շախմահմուդ, Ապրակունիս և Շաղղաթ գիւղի դպրոցներին, իսկ չորս օրինակ թողնում է խմբագրութեան հայեցողութեան։

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Վերջին շաբաթուայ ընթացքում պատերազմական կարևոր փոփոխութիւններ կատարուել են ֆրանս-անգլիական ճակատում։

Սոմմից մինչև Էն ֆրանսացիք յամառ կերպով յարձակուեցին գերմանական դիրքերի վրայ. գերմանացիք յետ մղուեցին խոշոր կորուստներ կրելով։ Ուազից հարաւ ֆրանսացիք մտան Կասի անտառի հարաւային մասերը։ Ֆրանսացոց զօրքը առաջացել է Ռուայի և Ուազի միջև մօտ 40 կիլոմետր տարածութիւն։ Մօտ 500 քառ. կիլոմետր—քաղաքներ, աւաններ, գիւղեր իրենց ազգաբնակութեամբ յետ նուաճուեցան։ Նահանջելու ժամանակ թշնամին բարբարոսաբար այրել ու ամայացրել երկիրը։

*Բրիտանացոց զօրքն ևս Լանկուրի շրջանում յարձակողական դիմելով առաջ է գնում քայլ առ քայլ։*

*Բալկանեան ճակատում հրաձգութիւն է տեղի ունենում։ Ֆրանսացիք յարձակում գործելով վերցրին 11 գնդացիր, 24 սպայ և 1777 գերի։*

*Կովկասեան ճակատում ռուսներ գրաւեցին Բերենդ աւանը Պարսկաստանում. կռիւն այդ շրջանում շարունակւում է։*

# Ներքին տեսութիւն

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌՈՒՍԱՍՏԱՆԸ

——

*Ոչ միայն ռուս, այլ և ընդհանուր պատմութեան մէջ դարձակէտ կազմող Յեղափոխութիւնը ռուսական հասարակական կեանքը դրեց միանգամայն նոր պայմաններում, զարգացման նոր ուղիների վրայ։ Ռուսական պետութիւնը նման է այսօր մի երկարատև, ծանր հիւանդի, որին մահացու վէրքերից փրկելու համար մի դժուարին անդամահատութիւն են կատարել. նա կարիք ունի մեծ խնամքի, զգուշաւոր ու աչալուրջ վերաբերմունքի և, որ գլխաւորն է, կանոնաւոր սնունդի, օդի և լոյսի։ Այսպէս միայն կարող է դա հետզհետէ կազդուրուել, առողջանալ և նոր շինարար աշխատանք կատարել։*

*Այո՛, շատ դժուարին, շատ բացառիկ պայմաններում է գտնւում ռուս հասարակութիւնը։ Պէտք է վերածնուել, պէտք է փոխուել, պէտք է նոր հասարակութիւն կազմել—նոր ըմբռնումներով, նոր բարոյականութեամբ ու հոգեբանութեամբ։ Իսկ դրա համար պէտք է շատ բան, այո՛, ամեն բան փոխել արմատից։ Բայց պետական ու հասարակական կեանքի ողջ սարք ու կարգի, բոլոր քաղաքացիական յարաբերութիւնների հիմնական բարեփոխութիւնը պահանջում է որոշ քաղաքական հասունութիւն, որոշ քաղաքացիական դաստիարակութիւն և առհասարակ կուլտուրական-հասարակական առաքինութիւններ։*

*Առանց այդ նման պետական յեղաշրջումները կարող են դիւրութեամբ «շրջուել իրենց հակադրութեան» կամ առնուազն ժողովրդի խաղաղ զարգացումը վտանգել տարերային, աղէտաւոր ցնցումներով։ Յեղափոխութիւնների այս ստուերային երևոյթներից խուսափելու համար հարկաւոր է աւելի գիտակից, աւելի զգուշաւոր ու լրջմիտ վերաբերմունք։ Որքան էլ հասունացած, որքան էլ բնականօրէն առաջացած լինի ռուսական հասարակական կեանքի այս մեծ յեղաշրջումը, բայց և այնպէս այդ կատարւում է թէ արտաքին և թէ ներքին բացառիկ պայմաններում։ Որքան առերևոյթ հեշտ ձեռք բերուեց Յեղափոխութիւնը՝ նոյնքան էլ հեշտ է վտանգել այդ։*

*Վտանգաւոր են առհասարակ բոլոր անցման շրջանները։ Ուժեղ են դեռ ևս թէ ներքին և թէ արտաքին, և մանաւանդ արտաքին, թշնամիները։ Ռուսական Ազատութիւնը կարող է մի սոսկալի օր պատմութեան մէջ չլսուած ու չտեսնուած Ստրկութեան փոխուել։ Թէկուզ—ժամանակաւորապէս։ Միենոյն է։ Այդ հնաւորութիւնը անհնարին պէտք է դարձնել։ Այդ է բացարձակ անթոյլատրելին։ Այդ է, որ երբէք չպէտք է լինի։ Անողոք է, ճիշտ է, վրէժխնդրութեան դիցուհի Նեմեզիդան. բայց աւելի անողոք է ֆատումը—ճակատագրականութիւնը պատմութեան մէջ։ Դժբախտաբար միայն՝ կամ ոչ միշտ գիտակից, բանուոր, արդար ուժերն են շարժում պատմութեան անիւը։ Յաճախ, շատ յաճախ, ճակատագրական դեր կատարում են, տարաբախտաբար, և անբան, անգիտակից, մութ ու տարերային ուժերը և դէպի յետ շրջում պատմութեան անիւը, իր սոսկալի պտոյտների տակ տրորելով ժողովուրդներ։*

*Այս օրերին մենք ամենից առաջ չպէտք է մոռանանք պատմութիւնը, այս մեծ ուսուցչի դասերը։ Եւ պէտք է գործենք պատմութեան ներհուն ըմբռնողութեամբ ու պետական իմաստութեամբ զինուած։ Ստանալով լայն ժողովրդապետական—դեմոկրատիկ իրաւունքներ պէտք է այդ կեանքում իրագործել կարողանանք։ Պէտք է կարողանանք մի իրօք դեմոկրատիկ պետութիւն կազմել։ Հին բռնապետական, ոստիկանական պետութեան աւերակների վրայ պէտք է նոր, ժողովրդական իրաւական պետութեան շէնքը կառուցանել։ Եւ այստեղ պէտք է երևան բերել մեծ քաղաքական հմտութիւն ու իմաստութիւն։ Այստեղ արգելքներ ու խոչընդոտներ շատ կան դժբախտաբար։*

*Նախ՝ դեռ ուժեղ ու սպառնական է արտաքին թշնամին, որ վստահ «ներքին թշնամու տրամադրութեան ու պատրաստակամութեան», նոյն իսկ սրա հրաւէրով պատրաստ է ամեն վայրկեան ներս խուժելու և յօդս ցնդելու Նոր ու Ազատ Ռուսաստանի երազը։ Այսուհետև Գերմանիայի ամեն մի յաղթութիւնը նաև ռուս բռնապետութեան, Հին Կարգի յաղթութիւնն է։ Ուրեմն այդ նաև, Ռուսաստանի ժողովուրդների Ազատութեան պարտութիւնն է։ Պատմութեան անողոք օրէնքներով գերմանական բռնապետութեան հարևանութիւնն անգամ վտանգաւոր է Ռուսական ժողովրդապետութեան։ Ուստի և մենք կանգնած ենք այսօր մի ծանր երկընդրանքի առաջ. կամ՝ Գերմանիայի՝ կամ՝ Ազատութեան, նորածին ռամկավարութեան (դեմոկրատիայի) պարտութիւնը։*

*Երկրորդ՝ դեռ ևս ուժեղ է արտաքին թշնամու թև ու թիկունք և գաղտնի զօրավիգ ներքին թշնամին։ Առնուազն յուրջ հսկողութիւն և մեծ աչալրջութիւն է հարկաւոր։ Այստեղ էլ պէտք է և ոչ մի վայրկեան չմոռանալ պատմութիւնը։ Լուդովիկոսները իրար շատ են նման։ Բռնապետների էութիւնն է՝ միշտ ուխտադրուժ, միշտ դաւադիր, միշտ դաւաճան։ Դրանց հետ կը լինեն վտանգի օրերին և իրենց ձեռնասուն բոլոր մեծ ու փոքր բռնակալները, չինովնիկների, հոգևորականների, բուրժուազիայի ու ազնուականութեան ստուար շարքերը։*

*Ռամկավարութեան (դեմոկրատիայի) երրորդ վտանգաւոր, կազմակերպուած ու գիտակից հակառակորդը բուրժուազիան է։ Չպէտք է մոռանանք, որ Ռուսական Մեծ Յեղափոխութիւնը կատարւում է մի քիչ այլ նշանակի տակ, քան Ֆրանսական Մեծ Յեղափոխութիւնը։ Այդ աւելի յիշեցնում է ֆրանսական կոմմունան։ Պատմական յապաղումով Ռուսաստանում «երրորդ դասի» յեղափոխութիւնը շատ էլ զուտ դասակարգային, բուրժուական չեղաւ։ Այդ շեշտուած կերպով բանուորական—«սոցիալական» յեղափոխութեան բնոյթ է կրում։ Ռուսաստանում բանուորութիւնը, առհասարակ աշխատաւոր դասակարգը տնտեսապէս ու քաղաքականապէս հասունացել և կազմակերպուած ու գիտակից կերպով մասնակցում է հասարակական կեանքի յեղաշրջման և իր կամքն է թելադրում վճռականօրէն։*

*Պատերազմական ու քաղաքական պայմանների շնորհիւ նա գտել է մի ժամանակաւոր օժանդակող զինակից—բուրժուազիային, բայց պատմական ու հասարակական կեանքի օրէնքներով վաղը և եթ իրար դէմ առ դէմ պէտք է կանգնեն այդ երկու երդուեալ հակառակորդները—մասնաւոր և համայնական սեփականութեան տարամերժ հասարակարգերի ներկայացուցիչները։*

*Որքան էլ «այսօր» աշխատենք աչք փակել այդ երևոյթի, իրողութեան առաջ, բայց այդ պէտք չէ բնաւ մոռանանք, եթէ կամենում ենք ռուսական հասարակական կեանքի նոր կազմաւորումն և իր հաւանական ձևերն ըմբռնել։ Թէ Ռուսաստանում*

ինչպիսի պետական-հասարակական կարգ կամ ինչպիսի կառավարական «ձև» կը ստեղծուի, այդ կախուած է ամենից առաջ ներկայումս այդ հասարակութեան մէջ ամենաուժեղ դասակարգի փոխյարաբերութիւնից։ Բուրժուազիան ու աշխատաւորութիւնը պէտք է որոշեն՝ թէ որպիսի կառավարչական կազմ ու ձև պէտք է ունենայ ապագայում Ռուսաստանը։ Եւ այդ նրանց համար անտարբեր հարց չէ։

Այսօր մենք միայն «ժամանակաւոր կառավարութիւն» ունենք։ Սա պէտք է հրաւիրի Սահմանադիր կամ Հիմնադիր ժողով, որը և պէտք է ամբողջ ժողովրդի կամքի ու ցանկութիւնների արտայայտիչը հանդիսանալով՝ որոշէ թէ ինչպիսի պետական կազմ պէտք է ստանայ Ռուսաստանը—սահմանադրական—միապետակա՞ն՝ թէ՞ հանրապետութիւն։ Այս թէ այն դէպքում էլ Սահմանադիր ժողովը պէտք է սահմանի երկրի սահմանադրութիւնը, այսինքն պետական հիմնական օրէնքները ժողովրդապետական սկզբունքներով։ Թէ այս սահմանադրութիւնը—ժողովրդապետական կարգերը միապետական թէ հանրապետական ձև կընդունեն—այս երբէք էլ անտարբեր չէ ո՛չ բուրժուազիայի, ո՛չ էլ աշխատաւորութեան համար։ Որ գլխաւորն է, այդ երկրորդական հարց չէ նաև մանր, ստորադաս ժողովուրդների համար, որոնք Յեղափոխութեան ազդարարած սկզբունքները—ազգերի ինքնորոշման ու անարգել զարգացման յոյսերը անհրաժեշտօրէն կապում են ոչ թէ սահմանադրական միապետութեան, այլ ժողովրդական հանրապետութեան հետ։ Նրանք ապագայ Ռուսաստանը երևակայում են իբրև ինքնավար—ազատ ժողովուրդների դաշնակցական հանրապետութիւն։

Եւ եթէ նկատի ունենանք, որ Ռուսաստանի ողջ ռամկավարութիւնը—բանուորութիւնն ու գիւղացութիւնը, սոցիալ-դեմոկրատ և սոցիալ-յեղափոխական ու բուրժուազիայի սահմ.-դեմոկրատական կուսակցութիւնները և անխտիր բոլոր ճնշուած, ստորադաս ժողովուրդները, ծայրագաւառները, որոնց հետ նաև Ուկրայինան Հանրապետութիւն են պահանջում՝ դժուար չէ գուշակել՝ թէ ինչպիսի պետական կազմ կունենայ ապագայ կառավարութիւնը։ Սահմանադրական միապետութեան կողմնակից կը լինեն միայն ազնուականութիւնը, չինովնիկութիւնը, հոգևորականութեան խոշոր մասը և բուրժուազիայի որոշ խաւերը։ Արդէն Յեղափոխութեան կատարման օրերին վերջինս ցոյց տուեց իւր քաղաքական համակրանքները։ Այդ տեսակէտից խիստ նշանակալից են նախ Ռոձեանկոյի առաջին հեռագիրը ցարին—փրկելու գահն ու հարստութիւնը և Միլիւկովի խօսքը խնամակալութեան մասին։ Ճիշտ է, Միլիւկովը յայտարարեց, որ միապետական կազմի մասին արտայայտածը միայն իւր մասնաւոր կարծիքն է եղել, բայց յետոյ լուրերն ու դէպքերը եկան հաստատելու, որ այս Յեղափոխութեան գլխաւոր դերակատարների—բանուորութեան ու զօրքի ճնշման տակ միայն վերացաւ խնամակալութեան, այսինքն միապետական կառավարութեան հարցը մինչև Սահմանադիր ժողով գումարուելը։

Եւ իսկապէս։ Այդտեղ մեծ հակասութիւն կար. կամ ժամանակաւոր միապետական կառավարութիւն—«խնամակալութիւն»՝ կամ Սահմանադիր ժողով։ Այդ արդէն իրար հակասում են։ Եթէ Սահմանադիր ժողովը պէտք է դեռ ևս նոր որոշի սահմանադրութիւնն ու կառավարական ձևը, ապա ժողովրդի սուվերէն—ինքնիշխան կամքի սկզբունքին և հենց «Սահմանադիր ժողովի» գաղափարին միանգամայն հակառակ բան է նախօրօք նրան որև է պետական ձև թելադրելը։

Ուրեմն Ռուսաստանի բազմատարր ժողովուրդը ինքը պէտք է ուժեղ ընտրական պայքար մղէ։ Եթէ մինչև այդ ժամանակաւոր կառավարութիւնը կարողացաւ պետական հին խարխլած շէնքը մասամբ կարգի բերել ու դիմագրաւել, անվտանգ դարձնել արտաքին և ներքին թշնամիներին—այդ պայմաններում միայն ցանկալի է, որ Սահմանադիր ժողովը շուտ գումարուի, չյետաձգուի մինչև պատերազմի վախճանը։ Այդպիսի բարենպաստ հանգամանքներում՝ թէպէտև հասարակական կեանքը դասակարգային պայքարի ու հակամարտութեան շեշտման շնորհիւ ուժգին ցնցումներ կը կրէ ներքուստ, բայց և հնար կունենայ օր առաջ հաստատուն դարձնել նոր կարգերը և ստեղծել հնարաւորութիւններ իւր ձեռք բերած իրաւունքներից օգտուելու համար։

Եւ որքան կարելի է շուտ պէտք է կատարուի այդ, որովհետև ժողովրդապետական-Հանրապետական Ռուսաստանը ոչ միայն անհրաժեշտ է պատերազմից յետոյ, այլ և պատերազմը վերջանալուց առաջ։ Այդ կենսական ու հրամայական պահանջ է՝ նախ հենց այդ պատերազմը բարեյաջող կերպով վերջացնելու, ապա ըստ հնարաւորին շուտով ժողովրդի քայքայուած տնտեսութիւնը վերականգնելու և իւր ազատ ու անարգել զարգացման նոր ուղիները հարթելու համար։

Վ. Խաւէնի

---

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆԸ

Մարտի 11-ին ժամանակաւոր Կառավարութեան նախարարների ժողովում անգլիական դեսպանը դաշնակից պետութեանց դեսպանների ներկայութեան արտասանեց ողջոյնի ճառ, յայտնելով որ դաշնակիցները ճանաչում են Ռուսաստանի Նոր Կառավարութիւնը և յարաբերութիւնները վերսկսում նրա հետ։

Նոր Կառավարութեան արտաքին գործերի նախարար Միլիւկովը պատասխանեց դաշնակից պետութեանց դեսպաններին, որ ռուս ժամանակաւոր Կառավարութիւնը գիտակցելով պետութեան սպառնացող ներքին ու արտաքին ահաւոր վտանգը, ստանձնեց երկրի գործերի ղեկավարութիւնը և վճռել է աւելի յամառ կերպով առաջ տանել պատերազմը և անխզելի կերպով կապուած է դաշնակիցների հետ։

Մարտի 11-ին պաշտօնապէս հաղորդւում է, որ մեծ իշխան Նիկոլայ Նիկոլայևիչը, Նիկոլայ II-ի կողմից ընդհանուր հրամանատար նշանակուած լինելով, հրաժարեցուել է Նոր Կառավարութեան կողմից, նրա փոխարէն գործօն բանակի ժամանակաւոր հրամանատար է նշանակւում ըստ օրէնքի Ալէքսէևը։

Հարաւային ու հիւսիսային ռուսական բանակների հրամանատարները հեռագրով իրենց համակրութիւնն են յայտնում Նոր Կառավարութեան, յայտնելով որ զինուորները հոգեկան լաւ տրամադրութեան մէջ են գտնւում և վճռել են պատուով շարունակել պատերազմը մինչև յաղթական վախճան։

Մարտի 13-ին ժամանակաւոր Կառավարութիւնն սկսեց քննել հիմնադիր ժողովի օրէնքները, մշակելով յատուկ մասնաժողով կազմելու հարցը։

Մեծ իշխաններ Նիկոլայ Միխայլովիչ, Դիմիտրի Կոնստանդինովիչ, Գաւրիլ և Իգոր Կոնստանդինովիչ արդարադատութեան նախարար Կերենսկուն հեռագրով յայտնում են, որ իրենք ջերմօրէն փարում են հայրենիքին և միանում ամբողջովին մեծ իշխան Միխայիլ Ալէքսանդրովիչի հրաժարագրում արտայայտուած մտքերին. իսկ ինչ վերաբերում է արքայական տան (удѣлная вѣдомость) սեփական հողերին, ըստ այդ մտքերի բնական հետևողութեան, պէտք է կազմեն պետական սեփականութիւն։

Մարտի 14-ին Պետական Դումայի Կոմիտէին կից կազմուեց զինուորական յանձնաժողով, որ իւր նպատակն է դրել բանուորների ու զինուորների համերաշխութեամբ մասնակցել զինուորական ու ծովային վարչութեանց աշխատանքներին։

Կովկասի բազմաթիւ քաղաքներում կազմուել են արդէն գործադիր կոմիտէներ, որոնք ընտրուած են տեղական ժողովուրդների ներկայացուցիչներից։

Թիֆլիսի Գործադիր Կոմիտէի կողմից պ. Ս. Յարութիւնեան Ղազախ, պ. Ա. Ջամալեան Գանձակ ուղարկուեցին տեղական կոմիտէները կազմակերպելու համար։

Վրացի սոցիալ-ֆեդերալիստներն ու մի խումբ վրացուհիներ հեռագրով դիմել են Նախարարական խորհրդի Նախագահ Լվովին և յայտնել, որ Կովկասի Կոմիսար նշանակուած Կիտա Աբաշիձէի տեղ Չխենկելու նշանակելը վիրաւորանք է վրացիների համար։

## ՉԿՐԿՆԵՆՔ ՍԽԱԼՆԵՐ

Պատմական լուրջ վայրկեանները լուրջ գործիչներ են պահանջում, որովհետև գալիք անցքերը չնախատեսնելու դէպքում և թեթև աչքով նայելիս՝ հետևանքները աղէտաբեր են լինում։

Ռուսաստանի այս օրուայ դրութիւնը աւելի լուրջ է, քան թէ 1904—1905 թուականներին։ Այն ժամանակ ազատութեան գաղափարով ոգևորուած Կովկասի ազգաբնակութիւնը խանդավառ ցոյցերով դիմաւորեց կատարուած յեղափոխութիւնը առանց միջոցներ ձեռք առնելու, որ ոգևորութեան օրերից յետոյ տեղի չունենան հիասթափութիւն և դառն օրեր։ Հոկտեմբերեան հրովարտակի առիթով հայ, թուրք և վրացի մտաւորականութիւնը և ժողովուրդը գրկախառնութեամբ պարզեցին համերաշխութեան դրօշը, հայերը թուրք մզկիթներում, վրացիք հայ եկեղեցիներում եղբայրութիւն քարոզեցին, Էրթօրա, Էրթօրա էին բղաւում. վրացիք և հայերը ուրախութեամբ էին լսում և մեր սրտերը հրճուանքով էին յարուում։ Բայց աւա՜ղ. շատ շուտով Կովկասի ազգերը ոգևորութեամբ պարզած համերաշխութեան դրօշակը ոտնակոխ արին, ցեխի մէջ տրորեցին և փոխադարձ արիւնով ներկեցին այն հայրենիքը, որոնք դեռ երէկ թրջուած էր եղբայրութեան գաղափարի ուրախութեան արտասուքներով։

Վրացիք և հայերը, որ իբրև քրիստոնեայ ժողովուրդ, դարերի ընթացքում բարեկամ և շատ քաղաքակրթական կապերով միացած ազգեր՝ աւելի պիտի գիտակցօրէն գնահատէին փոխադարձ երդումները, շատ շուտով մոռացան այս բոլորը և վերսկսեցին տխրահռչակ Գոլիցինի և նրա նզովեալ արբանեակների ներշնչած թշնամութիւնը։ Ճիշտ է, այն ժամանակ Կովկասի Շէյխ ուլ իսլամը դառ սոսկալի անցքերի գլխաւոր դրդողներին, «շէյթան» անուն տալով նրան, բայց այս հանգամանքը միայն բարեխիղճ խոստովանութիւն էր միայն։

Բայց արդեօք Շէյթանը այսօր սատկե՞լ է իրօք, թէ նա դեռ կայ։

Հին իրաւակարգի կողմնակիցները, Կովկասի ռուս չինովնիկութիւնը, որ միշտ նեղել է մեր ազգաբնակութիւնը կաշառակերութեամբ, հալածանքով և ատելութեամբ, միշտ պատրաստ է նպաստելու՝ նոր դժբախտութիւն. նոր կոտորած առաջ բերելու։ Այժմ աւելի հարկաւոր է սա նրանց ապացուցանելու, թէ նոր կառավարութիւնը չկարողացաւ խաղաղութիւն բերելու ազգերին։

Չկրկնենք հին սխալները, մտածենք դրական միջոցներով նախատեսելու գալիք դժբախտութիւնները խանգարելու, ստեղծենք առանձին կազմակերպութիւն Կովկասի ազգերից և մեր երկրի ամէն մի անկիւնում տարածենք եղբայրութեան և համերաշխութեան անհրաժեշտութիւնը։ Այս է ահա Կովկասի ազգերի ապագայ բախտաւորութեան գրաւականը։ Փոխադարձ յարաբերութեանց համար ճշմարտութիւնը և արդարութիւնը լոզունգ հրատարակենք։

Գ. Ենգիբարեան

## ՀԱՇՈՒԵՏՈՒՈՒԹԻՒՆ ՄԻ ՕՐԻՆԱԿԵԼԻ ՀՈԳԵՒՈՐԱԿԱՆԻ

Մի ժամանակ մեզանում պատասխանատու անձերից, մանաւանդ հաստատութիւններից հաշիւ և այն էլ հրապարակական հաշիւ պահանջել անվստահութեան նշան և կամ նոյն իսկ, ոմանց կարծիքով, համարեա թէ դաւաճանութիւն էր համարւում։

Անցաւ ժամանակ և կեանքը ցոյց տուաւ, ինչպէս որ սպասելի էր, որ հաշուետուութիւնը միայն նպաստում է գործի և հաստատութեանց յաջողութեան և զարգացման, որով և հասարակութեան սիրելի գուրգուրանքի առարկայ դառնում։

Եթէ ցարդ դժբախտաբար այս ճշմարտութիւնը չեն ըմբռնում Շամախու թեմի այժմեան առաջնորդ Բագրատ եպիսկոպոսի պէս հոգևորականներ, որ ցարդ ոչ միայն իբրև Եղբայրական Օգնութեան Նախագահ, այլ և իբրև Ճեմարանի չորս տարուայ տեսուչ, ոչ մի հաշիւ չէ տուել, սակայն կային և այնպիսի փայլուն ու պայծառ դէմքեր, որոնք ինչպէս շատ, այնպէս էլ այս կողմից պատիւ են բերում հայ հոգևորականութեան. խօսքս Ատրպատականի առաջնորդ Ներսէս եպիսկոպոսի մասին է։

Ահա մի գաղափարական հոգևորական, որ Ս. Էջմիածնի հոգևոր ճեմարանը և ապա բարձրագոյն ուսումը կատարելագործելով բաւական ժամանակ ուսուցչութիւն անելուց յետոյ հոգևոր կոչումն է ստանձնել։

Իբրև հոգևորական նա եղել է ուսումնասէր և ունի հայոց եկեղեցու իրաւունքի մասին կարևոր երկհատոր մի երկ։ Իբրև անկաշառ և մաքրակրօն հոգևորական աչքի է ընկնում միշտ իւր անբիծ կեանքով։ Անչափ եռանդուն ու ժիր, որով միշտ կենդանութիւն, ոգևորութիւն է մտցրել իւր տարած պաշտօններում, թէ Մայր Աթոռում և թէ դուրսը։

Այս ունակութիւններով և յատկութիւններով օժտուած Ատրպատականի առաջնորդ է դառնում Ներսէս եպիսկոպոսը։ Այստեղ ահա ցոյց տուաւ Ներսէս սրբազանը, որ ճիշտ Աւետարանի այն քաջ հովիւն է, որ պատրաստ է միշտ իւր անձը դնել իւր հօտի վրայ։ Պէտք է լսել և տեսնել, թէ ինչպէս Ներսէս օրն ի բուն աշխատում է և ճգնում ոչ միայն Ատրպատականի լայնածաւալ թեմի հոգևոր, դպրոցական և վարչական կարիքները լրացնելու, այլ և այն աշխարհասասան պատերազմի պատճառաւ Պարսկաստանում լցուած գաղթական հայ և ասորի ժողովրդին օգնութեան հասնում անդուլ ու անդադար։ Պարսկաստանից եկած հայ, ասորի, ռուս և թուրք — բոլորն էլ ոգևորութեամբ և հիացմունքով են խօսում այս անօրինակ և օրինակելի հոգևորականի մասին։

Եւ ինչպէս չգովեն այս անբասիր հոգևորականին, որ այսքան ծանրածանր աշխատանքների և հոգսերի ժամանակ դեռ կարող է, և այն էլ Պարսկաստանում, մի այնպիսի օրինակելի հաշիւ տալ մի այսպիսի ծանր ժամանակ, երբ հանգիստ ու դադար չունի և անընդհատ իւր լայնածաւալ թեմում վերուվայր շրջում և մինչև իսկ Ռուսաստան շտապում, ուր զետեղում է փախստականներին։ Ինչպէս 1916 թուականի դեկտեմբերին տպագրուած «Նախիջևան-Շարուր Դարալագեազ-Սալմաստի Եղբայրական Օգնութեան» տեղեկագրի 1914 թուի դեկտեմբերի 23 ից մինչև 1917-ի յունուարի 1-ի հաշուից երևում է, խնամուել է շուրջ 45,000 հայ և ասորի փախստական։

Ըստ այդ տեղեկագրի երկու տարուայ ընթացքում յանձնաժողովը հինգ անգամ գրաւոր հաշիւ է ներկայացրել հասարակութեան. ընդհ. մուտքը եղել է 1,110,451 ռ. 53 կ., ելքը 1.100,451 ռ. 53 կ., առձեռն մնում է դրամարկղում 10,000 ռ., ընդհանուր գումարից պետական նպաստը եղել է 628,475 ռ. 25 կ., Քաղաքների Միութիւնից հիւանդանոցների համար 123,300 ռ., Էջմիածնից՝ 90,197 ռ., Տաճիկեան Կոմիտէից՝ 105,208 ռ. 12 կ., Կով-

կասի Գլխաւոր Կոմիտէից 56,000 ռ., մնացածները այլ և այլ հաստատութիւններից և անձերից է։

Այդ յանձնաժողովի, որին մասնակցում են ազգային և պետական մարմիններ, նախագահն է Ներսէս եպիսկոպոսը, որի ջանքերին ենք պարտական անշուշտ «Որ 1896-ի քրդացած բոլոր հայերը մօտ 400 հոգի յետ դարձան իրենց եկեղեցու ծոցը, այլ և խալական քրդերից շարունակում են գալ և մկրտուել ու ցրուել հայ գիւղերն ապրելու համար. մինչև այսօր մկրտուած են 150 հոգի. ցանկութիւն են յայտնել զանազան շրջաններում մկրտուելու 400 հոգի։ Բրդուհիները մեծ պատրաստակամութեամբ պսակւում են հայերի հետ. քանի դէպքեր եղան, երբ քրդուհիները մերժեցին իրենց ազգականների խնդիրը՝ յետ դառնալու իւրայինների մօտ և ուրախութեամբ ամուսնացան հայերի հետ (Տեղեկագիր էջ 12)։ Արժէ որ ամեն մի ճշմարիտ հայ ու հաստատութիւն փութայ օգնութեան հասնելու այս անօրինակ շիտակ և անձնուէր հայ հոգևորականին։ Ահա ձեզ իսկական քաջ հայ հովիւ....։

Սկայ

---

## ՎԱՂՈՒԱՅ ՀԱՅ ԳԻՒՂԸ *)

### ՆԵՐԿԱՅ ՎԻՃԱԿԸ

Դեռ երկարաձգուող պատերազմը, անասելի չարիքներէ զատ, ունի մի խոշոր առաւելութիւն մը, որ չպիտի կրնայինք թերևս տարբեր պայմաններուն մէջ ձեռք բերել։ Ոչ միայն պատերազմը հայութեան երկու մեծ հատուածները իրարու մօտեցուց ու իրար ճանաչել տուաւ՝ մօտէն ու անմիջօրէն, այլ բնաւեր ու սրտով խորտակուած հայ փախստականը լինելու է այն հիմնաքարը, որու վրայ բարձրանալու է ապագայի մեր ազգային կեանքի շէնքը։ Եւ այս պատճառով չէ թէ սրելու կամ հրահրելու է «գաղթականի» ու բնիկի փոխյարաբերութիւնները, այլ հեռատեսութիւնով ու միասնաբար աշխատելու է հիմնաւորել նոր կառուցուելիք շէնքը։

Հայ գիւղն ու հայ հողը—մեր գոյութեան այդ երկու գըլխաւոր ազդակները—ծառայելու են այդ հետապնդուած ու միակ նպատակի իրագործմանը։ Նոր կառուցուելիք հայ գիւղի մէջ է, որ պիտի պատրաստենք մեր վաղուայ սերունդը և հայ հողի մշակութեան նոր ձևերով է, որ պիտի կրնանք աւելի խորն ամրոցներ ձգել հպարտ մեր դիրքով ու անսասան մեր կեցուածքով։

Արեւմտեան Հայաստանի աւերակներու վերաշինութիւնով—դրանց բարոյական շահագործումով աշխատելու են «Նոր գիւղի» կառուցմանը՝ այնտեղ ու այստեղ։ Եւ եթէ երբէք առայժմ մեր ամբողջ ուշադրութիւնը նուիրած ենք այդ աւերակներուն, փնտռելու համար աւերակներու տակ թաղուած փիւնիկը, այդ չպէտք է նշանակէ, որ մենք ընդմիշտ մոռացութեան տալու ենք այստեղի «կիսակործան աւերակները»։ Այնտեղի իրական մոխրակոյտերու հետ այստեղ ունենք նոյնպէս աւերակներ։

Ահա թէ ինչու համար, եթէ ոչ անմիջապէս, բայց լարուած աշխատանքի մասամբ հանդուրժելէ յետոյ, շուտով մեր մէկ աչքը դարձնելու ենք այս հողին ու այս օջախին։

Այդ վերադարձի միջոցին է, որ մենք մեր իսկ ձեռքով այրելու և քանդելու ենք Կովկասի բոլոր հայ գիւղերը և անոնց փոխարէն բարձրացնելու ենք նորեր։ Եւ այդ հրկիզումէն անմիջապէս յետոյ միօրինակ աշխատութիւնը կիրականանայ՝ առանց սահմանի արհեստական արգելքներու, առանց օտարացած Մասիսի չկամութեանը։

*) Տես «Համբաւաբեր» № 9, 10։

* * *

Մօտէն ծանօթ լինելով գրաւուած Հայաստանի կենտրոնական մասերու հայ ընկերութիւններու գործունէութեանը, յաճախ ստիպուած ենք խորհելու, որ այդ ընկերութիւններու ամբողջ հոգսը նիւթական օժանդակութիւն է միայն։ Ճիշտ է, որ ժողովուրդի մնացած բեկորները ապրելու են, բայց ճիշտ է նոյնպէս, որ նրանք և յետնորդները ընդ միշտ ապրելու անհրաժեշտութիւն ունեն՝ առօրեայ ապրումէն յետոյ։

Ինչպէս անել, որպէսզի յառաջիկային հայ գիւղն ու հայ հողը խնամող ձեռքերէ չզրկուին, չպարպուին ու գիւղը պահի իւր նախնի հրապոյրը՝ տակաւ զարգացող պահանջներու համաձայն։ Այս ասած միջոցին մենք չենք անտեսում Արևմուտքի ու Արևելքի պահանջներու խոշոր տարբերութիւնը, բայց չենք կարող մոռնալ նաև, որ մենք հետևելու ենք առաջինի օրինակին, որը, իւր դրական կողմերու հետ, պիտի ունենայ անպայման բացասական կողմեր էլ։ Չմոռնանք նաև, որ պատերազմը իւր ետևէն բերելու է բարքերու և ճաշակներու մեծ յեղաշրջում, որ «գաղթական» հայը Երևանի, Թիֆլիսի, Բագուի, Ռոստովի և նոյնիսկ Խարկովի կամ Եկատերինոդարի կեանքը տեսնելէ յետոյ, վաղեմի միամիտ վերաբերմունքը կորցրած պիտի լինի։

Բազմաթիւ գիւղեր քանդուած ու հիմնայատակ կործանուած են, նոյնիսկ շատ վայրերու մէջ հիմքն անգամ չէ մնացած։ Թէև դժուար է, բայց ասելու ենք, որ ներկայ սոսկալի նախճիրը օգտագործելու ենք, նոյնիսկ շահագործելու ենք բարելաւելու գիւղի բնակիչներու վիճակը՝ գործադրելով հողամշակութեան, առողջապահութեան և գեղեցկագիտութեան պահանջները։

Եւ այդ մեծ գործի համար հրապարակ գալու են գիւղատնտեսները, ճարտարապետները, բժիշկներն ու մանկավարժները՝ բոլորը միասին ստեղծելու համար «վաղուայ հայ գիւղը»։

* * *

Անցեալի մէջ շատ խօսուած ու գրուած է հայ գիւղի վիճակի մասին։ Դժբաղդաբար, բոլոր խօսքերն ու գրութիւնները մնացած են ապարդիւն։ Թուում է, թէ առիթը շատ նպաստաւոր է, մօտիկ ապագայում, անցեալի խօսքը գործի վերածելու։ Մենք յոյս ունենք, որ շուտով, պատերազմը վերջանալէ յետոյ, սկսելու ենք վերաշինել մեր աւերակները։ Հետևելու ենք անցեալի սխալներուն. օգտագործելու չենք առիթը մի քիչ գործնական ու գիւրակեաց պայմաններ ստեղծելու գիւղի մէջ։ Արդեօք նկատի պիտի ունենանք գիտութեան ու ներկայ հասկացողութեան պահանջները։

Պատասխանը դրական լինելու է։

Մի անգամ էլ յիշենք այն պակասութիւնները, որոնք մի անգամ ընդ միշտ ջնջուած են թշնամու ձեռքով։ Իսկ յետոյ թուենք, խոշոր գծերով, այն առաջնորդող սկզբունքները, որոնք միայն առաջնորդելու են մեր ձեռնարկի ժամանակ։

Բոլորիս էլ յայտնի է, որ մեր բոլոր գիւղերն էլ ոչ մէկ անգամ բարեկեցութեան յարմարութիւններ ունին։ Եթէ միայն նկատի ունենայինք գիւրակեցութիւնը, այն ատեն թերևս տըրուած հարցը վիճելի դառնար. բայց կան ուրիշ խնդիրներ էլ։ Առողջապահութեան կանոնները, ինչպէս նաև բարեկեցութեան տարրական պահանջները խստիւ կը բողոքեն այն ապրելակերպի դէմ, որը կը պահպանուի միմիայն սովորամոլութեան հետևանքով։ Պարզ է ուրեմն, որ պէտք է մտածել ժողովրդի ապագան փրկելու մասին։

Պտտելով մեր գիւղերը, ինչ կը տեսնենք։ Տները շինուած են առանց ճաշակի և միշտ էլ վատ կերպով պահպանուած, ինչ որ ամենավտանգաւորն է։ Մի՞թէ կը խորհուի, որ տուն մը շինուած միջոցին երբևիցէ մտահոգուած է տեղի ընտրութիւնով, յարմարաւոր դիրքով ու գիւրատար միջոցներով. ոչ, դժբաղդա-

քար։ Նա մտածած է միայն մի «պատսպարան» շինել։ Տան ներսը—նոյն անհոգութիւնը, օդն ու լոյսը հազիւ ներս կը թափանցեն խիստ փոքրիկ բացուածքներէ, որոնց թիւը ոչ մէկ անգամ կը համապատասխանէ եղած պահանջին։ Դժուար էր աւելի լայն ու մի քանի պատուհաններ շինել, որպէսզի օդն ու արևը իրենց օգտակարութիւնը չզլանային տան մէջ ապրողներուն։

Ամեն մէկ ընտանիք մի կտուր ունի միայն, ուր բոլորը միասի՛ն կը նայեն, կը պառկեն, կուտեն, կերակուր կը պատրաստեն, լուացք կընեն, հիւանդ ու մանուկներ կը խնամեն, և այնտեղ կը թառին հաւերն ու յաճախ այնտեղ կը պահուին ոչխարն ու կովը։ Նոյեան տապան չէ՞։ Կատարեալ խառնակեցութիւն, որ առողջապահութեան, բարեկեցութեան կամ բարոյականութեան ոչ մէկ օրէնքին կը համապատասխանէ։ Շատ դիւրութեամբ կարելի էր այդ խոշոր տունը միջնորմերով մասերու բաժնել, մի սենեակ աւելի շինել և ամենատարրական պահանջներուն բաւականութիւն տալ։ Այդպիսով ընտանիքի իւրաքանչիւր անդամ առանձին կը լինէր և ամբողջ ընտանիք—հայր, մայր, զաւակներ և յաճախ ծառաներ ու՛ եկած հիւրեր միասին չէին ապրիլ մէկ յարկի տակ, խառնակեցութիւնով՝ մոռացութեան տալով մաքրութեան հոգատարութիւնը...։ Զմոռնանք, որ այլևս անցած համարելու է այն ժամանակը, երբ գիւղացին իւր արտէն ու գիւղի եկեղեցու զանգակատանէն դէնը ուրիշ հորիզոն չունէր։

Ա. Մաքսապետեան

(Շարունակութիւնը հետեւալով)

---

## ՏԵՂԵԿԱԳԻՐ ՏՐԱՊԻԶՈՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԿՈՄԻՏԷԻ

(Սեփական թղթակցից)

*Ապրիլ 28 ից 1916 թ. մինչև փետրուար 1-ը 1917 թ.*

Մեծ Ռուսիոյ քաջարի և յաղթական բանակի Տրապիզոնի և շրջանի փառաւոր ու պանծալի նուաճումից անմիջապէս յետոյ՝ գեներալ-մայոր Լեախովի թոյլտուութեամբ և Թիֆլիսի Հայկ. կենտր. Կոմիտէի յատուկ հրահանգագրով հաստատւում է Տրապիզոնի Հայկական Կոմիտէն։

Հայկ. Կոմիտէի սուրբ աշխատանքի և գործունէութեան ամենասեպուհ և էական առանցքը պիտի լինէր հայապատկան շարժական և անշարժ կայք ու գոյքերի հսկողութիւնն ու նոցա պահպանումը, թրքական ոճրագործութեան և բարբարոսութեան մանզոհ գնացած և նահատակուած հայ ժողովրդի որբացեալ մանկանց և այրիացեալ այր և կանանց խնամատարութիւնը. հայ կարօտեալներին նպաստ հայթայթելը, նուաճուած վայրերում հայազգի խոշտանգուած ու առևանգուած կանանց ու ծնողազուրկ երեխաների որոնումը, և այդպիսիներին փրկելը գազանաբարոյ թուրքերի մահասարսուռ ճիրաններից և արիւնարբու երախներից. ընձեռել համապատասխան միջոցներ վերապրողներին և նպաստի կարօտեալներին՝ մխիթարական և ամոքիչ վիճակի ու կացութեան մէջ պահելու համար յարմար միջոցների ձեռնարկել։

Հայկ. Կոմիտէն թէև անցեալ 1916 թ. ապրիլի 28-ից ձեռնարկել էր գործի, սակայն ցաւ ի սիրտ պէտք է արձանագրել այստեղ, որ մի ոմն բացուարձակ մասնաւոր-փաստաբան Կալեմքերեան մականուանեալ, տեղիս ժանդարմերական գնդապետ Դինկային ներկայացնում է ինքնայիրիւր, ստայօդ և զրպարտիչ մի ամբաստանագիր ընդդէմ Հայկական Կոմիտէի, որի պատճառ խափանւում է Կոմիտէն անցեալ օգոստոս 12-ին, և այդ տևում է մինչև 30-ն նոյեմբեր 1916 թ. համարեա երեք և կէս ամիս։ Թէ ինչպիսի խղճալի և արգահատելի դրութեան էին մատնուած հայապատկան կայքերն ու գոյքերը այդ ժամանակամիջոցում—շատով կը տեսնենք։

Հայկ. Կոմիտէն վերակազմուելով անցեալ 1-ն դեկտեմբերի 1916 թ. և վերսկսելով իւր պատասխանատու պաշտօնէութիւնն ու գործառնութիւնը՝ մինչև 1-ն փետրուար 1917 թ., այսինքն հինգ և կէս ամսում կայացրել է երեսուն և ութ նիստ հերթական հարցերի լուծման շուրջը։

Ըստ կարելւոյն ճշգրիտ մի ցուցակագրութիւն կազմեց Տրապիզոն քաղաքի հայապատկան շէնքերի, թուով 426 հատ, որոնցից 131-ը բոլորովին քանդուած և հիմնայատակ կործանուած, 101-ը՝ կիսաքանդ վիճակի մատնուած, իսկ մնացեալ 194-ը կանգուն և անվնաս դրութեամբ։ Խանութներ, կրպակ և մագազիններ հաշւում են 141 հատ։

Տրապիզոնի շուրջ 16,000 հայ բնակչութեան պատկանեալ ճոխ ու փարթամ տնային կահաւորման և վաճառատների բազմատեսակ և միլիոնների արժողութեամբ ապրանքների ամենադոյզն ու չնչին մասը կարողացաւ Հայկ. Կոմիտէն ձեռք բերել, որոնց հարազատ տէրերը մեծ մասամբ սրախողխող են եղել, մասամբ վտարուած և հալածական յածում և թափառում են հեռաւոր վայրերում քաղցած ու ծարաւ, մերկ ու բոկոտն։ Ահա, այդ թշուառ և նահատակուած ժողովրդի շահերի պահպանութեան պարտականութիւնն ստանձնող Կոմիտէն է, որ խափանւում է չարամիտ Կալեմքերեանի զրպարտիչ ամբաստանագրով։

Ի դէպ է յիշել, որ թէպէտ Հայկ. Կոմիտէին այդ ժամանակներում փոխարինում էր ոստիկանապետ Զիժովսկու նախագահութեամբ մի յանձնաժողով, սակայն սոսկ անուանական դեր ստանձնելով՝ իրապէս գործօն և ոչ մի քայլ արած չէր, ի բաց առեալ երեսուն և ինն ցուցակներով տնային և գրասենեկային իրերից՝ որոնց տրուած են զինուորական զանազան բաժանմունքներին։

Իսկ առևտրական բազմահարուստ մթերանոցներից գրաւման (ռեկվիզիցիայի) յանձնաժողովը վերցրել է երեսուն ակտերով (ցուցակներով) մօտաւորապէս հարիւր հազար ռուբլու ապրանք պատերազմական պէտքերի հոգացողութեան համար։

Սեղ. Մաան.

(Շարունակութիւնը հետեւալով)

---

# ԳԱՒԱՌ

---

## ԱԽԱԼՑԽԱՅԻ ՇՐՋԱՆԻ ՓՈԲՐ-ՊԱՄԱՃ ԳԻՒՂԻ ԴՊՐՈՑԻ ԽՆԴՐԻ ՇՈՒՐՋԸ

——

*Ախալցխա, 25 յունուարի*

Քաղաքիս հարաւային կողմում, 5—6 վերստ հեռու կան 6 հայաբնակ գիւղեր, այն է՝ Մեծ-Պամաճ, Փոքր-Պամաճ, Սազել, Ղուլալիս, Օրալ և Խակ, որոնցից ոչ մէկում չկան ծխական դպրոցներ, որով և 200 տնից աւելի գիւղական համայնքը զըրկուած կրթութեան բարիքից։

Շատ անգամ այդ մասին հարց է առաջացել, հիմնելու մի կենտրոնական դպրոց, որից անխտիր օգտուելու էին իրար շատ մօտ (հազիւ 2—2 վերստ միմեանցից հեռու) եղող յիշեալ գիւղերի մատաղ սերունդը։ Նոյն իսկ Կ. Հ. Բ. Ընկ. տեղական ճիւղի վարչութեան նախաձեռնութեամբ, անցեալ տարիները, այդ առթիւ, ընտրուած մի Յանձնախումբ թէ գիւղացիների ներկայացուցիչներից և թէ վարչութեան անդամներից, որոնք սկսեցին մի շարք խառն ժողովներով նախապատրաստութիւններ տեսնել, որոշուել էր այդ կենտրոնական դպրոցը կառուցանել Փոքր-Պամաճ գիւղում, որ յիշեալ գիւղերի մէջտեղն է։ Այդ դպրոցի շինութեան համար, համագիւղացի՝ տիրացու Ղազար

Սահակեանը ինքնակամ նուիրեց իւր սեփական արտը, շինութիւնը նրա վրայ կառուցանելու։

Գիւղացիք յանձն առան իրանց միջոցներով դպրոցի շինութեան քարը, փայտը, աւազը, վարպետը մատակարարելու, իսկ մնացեալը Բարեգործ. Ընկերութեան և դրսի օգնութիւններով գլուխ բերելու։ Գործը արդէն գլուխ գալու վրայ էր, երբ սկսուեց ներկայ ահռելի պատերազմը, ուստի և գործը մնաց կիսակատար։ Սակայն կարիքը մեծ է և անհրաժեշտ օրուայ պահանջ, ուստի նոյն ընկ. վարչութիւնը այս տարի սկսել է աշխատել գոնէ առաջիկայ ուսումն. տարուանից գլուխ բերելու։ Ամսիս 22-ին նշանակել էր խառն ժողով այդ խնդրի մասին։ Ժողովին մասնակցում էին յիշեալ գիւղերի ներկայացուցիչները իրանց ծխատէր քահանաներով և վիճ. գործակալ քահանան։ Վարչութեան առաջարկին գիւղացիք իրանց պատրաստականութիւնը յայտնեցին ուժերի ներածին չափ օգնել։ Այդտեղ որոշուեց աշխատել կառուցանել դպրոցը և անպատճառ առաջիկայ դպրոցական տարուանից բաց անել, եթէ շինութիւնը պատրաստ չեղաւ, դպրոցը ժամանակաւորապէս մասնաւոր տներում։ Բայց որովհետև թէ այդ դպրոցի կառուցման և թէ պահպանութեան համար գիւղացիների միջոցները շատ սուղ են, ուստի անհրաժեշտ համարուեց դիմել դրսի օգնութեան։

Ժողովը որոշեց մի խնդրագրով դիմել Վեհ. Հայրապետի հայրական օգնութեանը և վիճակիս առաջնորդ՝ Մխիթար եպիսկոպոսին, Կ. Հ. Բ. Ը.-թեան և Պետրոգրադի եկեղեցական խորհրդին և այլն։ Առանց դրսի օգնութեան այդ շատ կարևոր հիմնարկութիւնը գլուխ չի գալ, երբ իրանց աշխատաւոր ձեռները պատերազմի պատճառով հեռացել են հայրենի գիւղից և գիւղացիք իրանք կարօտ են օգնութեան։

Թ.

---

*Թ.-Խ. Շուրա, 30 յունուարի*

Ծննդեան երեկոյեան, յունուարի 5-ին, տեղիս ճիւղի Կ. Հ. Բ. Ընկ.-թեան նախագահ տ. Մ. Ջալալեանը, գանձապահ տ. Ե. Վարդանեան և փոխ-անդամ տ. Գայիանէ Ջարարեանը, ուսուցիչ պ. Վ. Առաքելեանցի հետ միասին «Աւետիս» շրջեցին, որից զուտ գումար գոյացաւ 141 ռ. 50 կ.։ Չնայելով, որ ընկերութիւնը նոր է վերաբացուել տեղումս, բայց շնորհիւ յարգելի վարչութեան եռանդուն գործունէութեան, շատ յաջող քայլեր է անում։ Ցարգանք և պատիւ մեր ժրաջան տիկիններին, կեցցէ և Թ.-Խ. Շուրայի հայ հասարակութիւնը, որ սիրալիր ընդունելութիւն էր ցոյց տուել այն գիշեր «Աւետիս» շրջողներին։ Ընկերութիւնը փետրուարի 9-ին, Վարդանանց տօնի օրը, մեծ հայկական երեկոյթ է տալու տեղիս ժողովարանի դահլիճում։

— Յունուարի 28 ին երեկոյեան Սարգիս Բալայեանցի տանը ընթրիքի ժամանակ, տեղիս ճիւղի Կ. Հ. Բ. Ընկ.-թեան օգտին Մ. Ինքատեանը իւր կողմից 100 ռ. նուիրեց, որին և հետևեցին ներկայ եղող բոլոր սեղանակիցները։ Հաւաքուեց 134 ռ., որ յանձնուեց ընկերութեան գանձապահ տ. Եղիսաբեթ Վարդանեանցին։

---

## ՏԱՐԵԳԻՐ Կ. Հ. Բ. Ը.-ԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ըն.-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.—„Тифл. Лист."-ի խմբագրութեան միջոցով Ս. Զաւրեանից ի յիշատակ հանգուցեալ եղբօր՝ Զ. Զաւրեանի յօգուտ ճաշարանի 50 ռ.

— „Кавк. Слово"-ի խմբագրութեան միջոցով յօգուտ քաւորների 100 ռ.։

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը Վանի նախկին նահանգապետ գնդապետ Տերմէնից ստացել է ի պահեստ Յակոբ Արշաւիրի և Արուսեակ Թոնիրջինողեանց որբերին յանձնելու 1,417 ռ. և մուրհակ-ստացագիր 25 ռուբլու։

— Նոյն անձի այրուց յիշեալ գումարի տոկոսներ 5 ռ.։

### ՈՐԲԱՆՈՑՆԵՐԻ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎ

Որբանոցների յանձնաժողովը իւր վերջին նիստում պ. Ն. Աբելեանի նախագահութեամբ զբաղուեց շնորհալի որբերի ապագայ դաստիարակութեան խնդրով։ Նկատի ունենալով որ պ. Փիրումեանը ընդհ. կառավարիչ է նշանակուած Թիֆլիսի որբանոցներին, որոշուեց որ նա ամեն ասպարէզի վրայ շնորհք ցոյց տուող որբերի ցանկ պատրաստի, որպէսզի այնուհետև յանձնաժողովը գործնական քայլեր անի նրանց դաստիարակութեան մասին։

### ՃԻՒՂԵՐ

*Սղնախ.*—Տեղիս Կ. Հ. Բ. Ընկ.-թեան ճիւղի վարչութեան անդամներ գաղտնի քուէարկութեամբ ընտրուել են՝ տիկնայք 1. Ն. Ամիրխանեան, 2. Մ. Օթարեան, 3. իշխ. Մ. Անդրոնիկա, 4. օր. Ս. Պօղոսեան և 5. օր. Ա. Սարգսեան։ Նորընտիր անդամները, բոլորն էլ, քաղաքի ազդեցիկ, հասարակական դիրք ունեցող անդամներ են և յայտնի իրենց բարեգործութեամբ։

— *Պարենաւորման բաժանմունք պետական միջոցներով.*

—Փետրուարի 24-ից մինչև մարտի 8-ը *ալիւր* ուղարկուած է Դիլիջան 1 վագոն, Քարվանսարա՝ 1, Իգդիր՝ 9, Վաղարշապատ՝ 7, Աշտարակ՝ 4, Սարիղամիշ՝ 6, Նոր-Բայազիտի, Ներքին-Ախտայի և Երևանի պահեստների համար՝ 4, Աղէքսանդրապոլ՝ 8, Ղամառլու՝ 4, Ղարս՝ 4, և Գանձակ՝ 4, ընդամենը 44 վագոն։

*Սապոն* ուղարկուած է Ալէքսանդրապոլ 42 պուդ, Կարնի, Խնուսի և Բաշ-գիւղի պահեստներին՝ 125 փ. և Ղարաքիլիսա՝ 41 պ. 10 ֆ.։

*Լոբի* ուղարկուած է Քարվանսարա 100 պ. և Դիլիջան 320 պուդ։

*Շաքարաւազ* ուղարկուած է Գանձակ 51 պ. 10 ֆ., Անենո՝ 26 պ.։ Ղարաչինար՝ 26 պ., Երևան 95 պ. 10 ֆ.։

*Թէյ* ուղարկուած է Նոր Բայազէտ 250 ֆ.։

*Գարի* Աղստաֆա 1 վագոն, Սարիղամիշ՝ 1։

Նոր գնումներ. Հիւսիսային Կովկասում 72 վագոն թեփ-ալիւր, 20 վ. առաջին տեսակի ալիւր և 15 վ. ցորեն։ Բացուած է Էջմիածնի գաւառում Ղուրդուղուլի գիւղում նոր պահեստ։

*Ղարս*.—Պահեստի կառավարիչ Ռ. Սիմէոնեանից. Տեղումս առաջարկում են գնել 600 պարկ առաջին տեսակի թեփ—ալիւր՝ պարկով միայն պուդը 4. 30 կոպէկով։

*Պատասխանուած* է. հարկաւոր գումար փոխադրեցինք։

*Եկատերինոդար*—Մելքոնեանից. Առաջարկում են 50 վ. առաջին տեսակի ալիւր 28 ռ. պարկը. յանձնումը մարտ ամսին։

*Եկատերինոդար*—Մելքոնեանից. Լիսիկատոսը (Лисикатосъ) ներկայացրեց գարու 3 դուբլիկատ, հեռագրեցէք որքան է հարկաւոր նորան վճարել։ Ուղարկեցի 9 դուբլիկատ շուտով դրամ ուղարկեցէք։

Պատասխանուած է. Լիսիկատոսին հարկաւոր է վճարել 80 տոկոս, իսկ 20 տոկոսը երբ ապրանքը Փոթի հասնի։ Փոխադրեցինք 70 հազար ռ.։

*Մելքոնեանից*— Որովհետև շուկայում ալիւրի գինը շատ աւելի բարձր է, քան հաստատուն գները (твердые цѣны), ուստի հնար չկայ նոր գնումներ կատարել. ու այդ պատճառով փետրուարի տուած նարեադները մնում են անգործադրելի։

*Ալէքսանդրապոլ*—Մխիթար Դարմանեանից.—Թալինի շրջանի 12 գիւղում բնակուող գաղթականները հնար չունին օգտուելու Վաղարշապատի և Ալէքսանդրապոլի պահեստներից։

Մթերքների պահանջը մեծ է, հարկաւոր է Թալինում ևս բանալ պահեստ,

Հեռագրուած է Ընկերութեան լիազօր Աղ. Աղայեանցին, որը մեկնել է Էջմիածնի շրջանը Ղուրդուղուլի գիւղում պահեստ բանալու, որպէսզի անմիջապէս տեղեկութիւն հաւաքի և զեկուցի պարենաւորման բաժանմունքին այս առթիւ։

Ծկատերինոդար—Մելքոնեանից. Գնեցի երկու վագոն սապոն, արկղը 48 ռ. 50 կ. պէտք է յանձնեն մարտ ամսին. 8,000 ռ. կանխավճար տուի. ուղարկեցէք Նարեան։

Սարիղամիշ—Քոսանջանից. Երեք վագոն ցորեն արդէն գնել եմ, հեռագրեցէք որքան նորից գնեմ։ Պատասխան.—Գնեցէք որքան հնարաւոր է։

## Քրոնիկոն

Վախճանուել է վաճառական Վասիլ Աւագովիչ Դաւիդով, որ իւր ամբողջ շարժական և անշարժ կարողութիւնը՝ մօտ 300,000 ռ. կտակել է Կ. Հ. Բ. Ընկերութեան։ Թաղումը տեղի ունեցաւ մարտի 18-ին։ Մանրամասն շուտով կը հաղորդենք։

— Կազմակերպւում է Թիֆլիսի քաղաքային միլիցիա, իբրև աւագ միլիցիոնէրներ հրաւիրւում են ուսանողները։

— Թիֆլիսի հայ քահանաների ընդհանուր ժողովում ընտրուեց յատուկ յանձնաժողով, որը մշակելու է հայոց եկեղեցուներքին և ծխական խնդիրները բարեկարգելու ծրագիր։

— Կովկասի համար նշանակուած կոմիսար Կիտա Աբաշիձէին փոխարինելու է Պետական Դումայի անդամ Չխենկելին։ Այդ առթիւ վրացի սոցիալիստ-ֆեդերալիստների կուսակցութիւնը բողոքել է նախարարների նախագահին։

— Սկսուեց Անդր-Կովկասի քաղաքային, գաւառական և աւանային գործադիր յանձնաժողովների ներկայացուցիչների համագումարը։

— Մարտի 13-ից Թիֆլիսի նահանգապետը և փոխ-նահանգապետը իրանց բոլոր պարտականութիւններն ու գործերը յանձնեցին Թիֆլիսի գործադիր կոմիտէի կոմիսարներին։

— Նախկին փոխարքայի պալատին կից գտնուած այգին բացուելու է հասարակութեան համար։

— Թիֆլիսում հրատարակուող „Кавказъ“ թերթը անցնելու է Գործադիր Կոմիտէին իբրև պաշտօնական թերթ։

— Գործադիր Կոմիտէի որոշմամբ թէ Մետեխի և թէ նահանգական բանտերից արձակուած են քաղաքական կուսակցութիւններին պատկանած բանտարկեալները։ Ազատուած են նաև աղանդաւոր զինուորները.

— Թիֆլիսի նահանգի և Թիֆլիսի քաղաք. տարրական դպրոցների ուսուցիչների մարտի 10-ի նիստում որոշուած է առաջարկել՝ պաշտօնից հեռացնելու Կովկ. ուսումնական շրջանի հոգաբարձու Հ. Ռուդոլֆին, շրջանային բոլոր տեսուչներին և վերատեսուչներին։ Նոյն ժողովում որոշուած է հիմնել Ուսուցչական Միութիւն։

— Մի պարոն, որ իր անունը առայժմ անյայտ է ուզում պահել, «Հորիզոնի» խմբագրութեան յանձնել է 700 ռ.՝ Հայկական ազգային հիմն գրելու համար։ Այդ գումարից 500 ռ. մրցանակ եղանակի և 200 ռ. էլ բնագրի համար։ Ներկայացուած երկը կը քննուի Գրողների և Երաժշտական Ընկերութեանց խորհրդում։

## Արտաքին տեսութիւն

### ՆԱՄԱԿ ԼՈՆԴՈՆԻՑ

*(Սեփական թղթակցութիւն)*

«Համբաւաբեր»-ին (Խմբագրական նօթեր)

Հայկական «Կապոյտ Գիրքը».--Դեկտեմբերի կէսից, այն է Հայկական Կապոյտ գրքի հրատարակութիւնից ի վեր լինում են մեծ ջանքեր ժողովրդականացնելու այդ պաշտօնական գիրքը, և նրա բովանդակած սարսափների մանրամասները, ինչպէս նաև հայկական անցեալի և ներկայի համապատկերը տարածելու անգլիական ժողովրդի լայն խաւերի մէջ։ Մամուլի գլխաւոր օրգանները օր ընդ մէջ տպում են խոշոր յայտարարութիւններ, յորդորելով հասարակութեան կարդալ այդ գիրքը։ Լորդ-Մէրի Հայկական Ֆոնդի Կոմիտէն «Times»-ի, «Manchester Guasdiain»-ի, «Daily Wews»-ի և ուրիշ օրգաններում տպագրել է տալիս քաղուածքներ Արճէշում և Մշոյ դաշտում կատարուած զազանութիւններից (պ. Ա. Սաֆրաստեանի գրածները)։ Բովանդակ կրօնական և պարբերական մամուլը արձագանգ է տալիս օրաթերթերին, նոյնպէս ստիպելով քաղուածներ և վաճառման համար ազդարարութիւններ։ Գուցէ ոչ մի պաշտօնական հրատարակութիւն այսպէս չէ ազդարարուել մամուլի էջերում, քան հայկական Կապոյտ Գիրքը։ Լորդ Բրայս և պ. Արնոլդ Դայնբի ձգնում են ամեն կերպ այժմէութիւն տալ հայկական ողբերգութեան և բրիտանական հասարակութեան կարծիքի առջև կենդանի՝ պահել Հայաստանի զոհողութիւնների յիշատակը։

«Փառքի ուղին».—Այս վերնագրով Ճոզէֆ Հոքինկ, անգլիացի յայտնի վիպասանը, «The Sunday Companion» շաբաթաթերթի էջերում սկսել է գրել մի յոյժ հետաքրքրական վէպ հայկական սարսափների մասին։ Վէպի հերոսը, Վիկտոր, մի հայ որբ է, որ 1896-ի կոտորածին Ամերիկա գաղթելիս, ցամաք դուրս է գալիս Անգլիայի Բորթմութ նաւահանգիստը։ Այնտեղ միանում են Վիկտորին հայրը և մայրը, և հայ որբ միամեայ երեխան որդեգրւում է Անգլիայի մի յայտնի ծովակալի կողմից։

Վիկտորն անգլիացի ազնուական ծովակալի ընտանիքում մեծանում է իբրև մի անգլիացի երեխայ, առանց մի բան գիտնալու իր ծագման ու ողբերգական հանգամանքների մասին։ Ըստ անգլիական ազնուականների սովորութեան Վիկտորը մտնում է ամենայայտնի Public School-ներից մէկը, ուր յաջող աւարտելով մտնում է համալսարան։

Վրայ են հասնում 1914-ի պատերազմը և հայկական հալածանքները Թիւրքիայում։ Միաժամանակ իրան որդեգրող ծովակալ Tancrum Վանից ստանում է մի նամակ, որով Վիկտորի հօրաքոյրը և իւր երկու գեղանի աղջիկները պարզելով վերահաս վտանգը, անգլիական ծովակալից խնդրում են օգնութիւն։ Այժմ ծովակալը ամեն ինչ պարզում է Վիկտորին. հայ պատանին անմիջապէս վճռում է մեկնել դէպի «իւր հայրենիք Հայաստան» և փրկել իւր հօրաքոյր և երկու քեռորդիները։ Ցնցող արկածներից յետոյ վերջապէս Վիկտորին յաջողւում է Բէյրութի, Հալէպի և Սասունի ճանապարհով Վան հասնել։ Վիպասանը, Ճոզէֆ Հոքինկ, սրտագրաւ ոճով ներկայացնում է թիւրքական նենգութիւնը, թիւրքի արիւնարբու ու անվստահելի բնաւորութիւնը, նրա կաշառակերութիւնը և վատութիւնը։ Վառ գոյներով նկարագրում է Սասունի կռիւը, սասունցիների աւանդական անընկճելի ոգին, Վանի ինքնապաշտպանութեան պայքարը, որին մասնակցում է և Վիկտոր։ Պարզապէս սքանչելի է անգլիական վիպասանի ներկայացրած պատկերը Ճէվտէթ բէյի

մասին, որին ընդունում է որպէս տիպիկ Թիւրքը»։ Վէպը դեռ շարունակւում է, և երբ աւարտի պարբերական հրատարակութիւնը, պիտի տպուի առանձին։

*Լորդ Գրոմըրի մահը.*—Անգլիայի եզական դիպլոմատ և պետական անձ Լորդ Գրոմըրի մահով տաճկահայերն էլ կորցնում են մի համակրող ու ազդեցիկ բարեկամ։ Նա ստեղծեց ժամանակակից Եգիպտոսը, և իբրև անգլիական կառավարիչ իր 20-ամեայ պաշտօնավարութեան ընթացքում, շատ լաւ ճանաչել էր հայերին, և առանձնապէս հանգուցեալ Նուպար փաշային։

Լորդերի պալատում Լորդ Բրայսի աջ թեւն էր նա, առանձնապէս իբրև փորձուած դիւանագէտ և մասնագէտ Արևելեան հարցին։

Վերջին երկու տարուան ընթացքում նա յաճախ խօսում և գրում էր հայերի մասին, գործածելով յոյժ վերապահ, բայց խոստմնալից ակնարկութիւններ Հայաստանի ապագայի մասին։

Տաճկահայերը չեն կարող մոռանալ այս իրենց ջերմ պաշտպանին և անշուշտ արտայայտած կը լինեն ընտանիքին իրենց ցաւակցութիւնը հեռագրերով և հոգեհանգիստներ կատարած լինելով։

Ա. Սաֆրաստեան

# Տաճկահայեր

## ԶԳՈՒՇԱՑԷ՛Ք, ՀԱՅԵՐ

Այս վերնագրով մի յօդուած հայ ծանօթ բանասէր Կ. Յ. Բասմաջեանը զետեղել է Մարսելիայում մեր ազատագրութեան ռահվիրաններից-- հայրենասէր Մ. Փորթուգալեանի խմբագրութեամբ 1885 թուականից ի վեր հրատարակուող «Արմենիա» լրագրի 29 համարում։

Այս հետաքրքրական յօդուածից երևում է, որ մեր դարաւոր ոսոխ օսմանցիների արժանաւոր ժառանգ գերգազան երիտասարդները մեր երկիրը աւերելով և հայ ժողովուրդն ըստ Թրքական ուղեղի բնաջնջման ենթարկելուց յետոյ եւս դեռ չեն դադարել մութ գործերից։ Վերածնուելիք Հայաստանի ուրուականը նոցա հանգիստ չէ տալիս, ուստի նորանոր հնարներ և մեքենայութիւններ են նիւթում մեր բարեկամներին մեր դէմ գրգռելու, դժբախտաբար տակաւին գտնելով դաւաճան և ստոր հայ գործակիցներ։ Սակայն թող խօսի ինքը պ. Բասմաջեանը։

«Այս օրերս առիթն ունեցայ տեսնելու Թուրքերու կողմէ դեռ նոր հրատարակուած երկու ալբոմ, հետևեալ վերնագրով. Les Aspirations des Armeniens (Հայոց Ըղձանքները)։

«Այս պարզ բայց դաւադրական վերնագիրն իսկ ցոյց կուտայ, թէ ինչ կրնար ըլլալ լիշեալ ալբոմին բովանդակութիւնը։ Հոն հոնէ հոն շարուած են հայ հերոսներու պատկերներ, հայ կամաւորներու խմբակներ, հայ յեղափոխական թերթերէն արտատպումներ, հայ թագաւորներու պատկերներ, Փոքր Հայաստանի, Մայր Հայաստանի, Հայաստանի մեծ և փոքր քարտէսներ, ցոյց տալու համար թէ հայերը հին Հայաստանի սահմանները մինչև Կովկաս ընդարձակելով՝ մտադիր են օր մը գրաւել... Կովկասն ալ։ Վերջապէս ալբոմին մէջ լուսանկարներով տպուած են այն բոլոր յօդուածներն ու գրութիւնները, որոնք հայերու կողմէ հակառակ կուսակցութեանց դէմ հրատարակուած են զանազան թերթերու մէջ, հայկական ներկայ կոտորածներու պատասխանատու բռնելու նպատակով ոչ թէ Թուրքը, այլ հայը։

Այս ալբոմի հրատարակութեան բուն նպատակն է, նախ՝ «քաղաքակիրթ (?) աշխարհի առջև արդարանալ, և երկրորդ՝ Ռուսիան գրգռել մեզի դէմ, որպէսզի մեր միակ ապաւէնն ալ երես դարձնէ մեզմէ։

Ալբոմին պարունակած պատկերներուն տակն ու վրան բացատրական ծանօթութիւններ գրուած են չորս լեզուով. Թուրքերէն, ֆրանսերէն, գերմաներէն և անգլիերէն։

Ներկայ գրութիւնովս կը յորդորեմ մեր ազգայինները ոևէ անզգոյշ բան չգրել հրապարակով, մեր թշնամիներու ձեռք նոր զէնք չտալու համար մեզի դէմ։ Թշնամին մեզմէ աւելի արթուն է, և կը գործէ Կէօչէեան Անտոնի պէս դաւաճան հայերու աջակցութեամբ, որուն միացած է, կըսեն, Նաֆիլեան անունով մէկն ալ։

Զգուշացէ՛ք, հայե՛ր։

Փարիզ Կ. Ց. Բասմաջեան

Յ. Գ. Մեր ազգային թերթերէն պիտի խնդրէի արտատպել ներկայ գրութիւնս, ի սէր մեր սուրբ դատին։ Կ. Յ. Բ.

# Գեղարուեստ

## ԿԱՊՈՅՏ ԱՂՋԻԿ

Ա.

«Բաժակ թէյ»-ին մէջ երբ ես
կը նստէի, նա և եթ
կը մօտենար սեթևեթ,
անմեղունակ ու միշտ հեզ։

— Ի՞նչ կը հաճէք, հաց-կ՚արմագ,
բաժակ մը թէ՞յ, թէ՞ մի սուրճ.
մերթ ժպտանուշ, մերթ ալ լուրջ
կը հարցնէր ինձ արագ։

Կապոյտ աղջիկ էր անուն,
աչքը կապոյտ էր, ծաւի,
որ անծանօթ մութ ցաւի
կը յառէր ինձ, ամէնուն։

Ծաղիկ փնջիկ մ՚ալ բուրոտ,
կապոյտ՝ կուրծքին կը ննջէր,
որ պարտէզէն կը փնջէր
արշալոյսին գուրգուրոտ։

Ինչպէս անմեղ մի թիթեռ,
կը թրվռար կը խօսէր.
բայց թէ ինչ է խոկ ու սէր
ո՛հ, չգիտէր ինքը դեռ։

«Բաժակ թէյ»-ին մէջ՝ նա միշտ
կը մօտենար ինձ արագ.
— Ի՞նչ կը հաճէք, հաց-կարմագ,
կը հարցնէր մեզմ, անվիշտ։

Բ.

Խորանին մէջ իմ հոգուն
զայն դիցուհի կերտեցի,
անրջանքով և խոկուն
կապոյտ աղջիկ երգեցի։

*Կապոյտ էր կեանքն ինձ համար,*
*կապոյտ էին մարդ, լուսին…*
*աստղիկներն ալ անհամար,*
*կապոյտ սուտեր ինձ ըսին…*

*Երբե՛ք չըսի ես իրեն*
*խօսք մը քնքուշ, կաթոգին.*
*— «Թող ուրիշներ զինք սիրեն,*
*թող կոյս մնայ իմ հոգին»…*

*Միայն օր մը երբ նորէն*
*ինձ մօտեցաւ քիչ մը սէգ,*
*Թոթովեցի մեղմօրէն*
*— «բարե՛ւ, օրիորդ, ինչպէ՞ս էք»։*

*Շոյեց ծամերն իր արձակ,*
*դէպ ինձ դարձուց իր երես,*
*ըսաւ անփոյթ, համարձակ*
*— Բաւական է ինձ գերես…*

*Վարդ մը ժպտեց իր շրթին՝*
*անմեղութեան վարդ մը սօսկ.*
*ես սանձ դրի իմ սրտին,*
*չըսի իրեն ոչ մի խօսք։*

Գ.

*Իրիկուն մը, ես յոգնած,*
*«Բաժակ Թէյ»-էն ներս մտայ,*
*Կապոյտին հոն չգտայ,*
*ո՞ւր էր արդեօք, ո՞ւր գնաց։*

*Սիրտըս տակաւ կաղօտէր՝*
*ինչպէս հանգչող մի կանթեղ.*
*եւ հոգիս ալ հէք, անդեղ*
*ծունըր չոքած կաղօթէր։*

*Ա՜խ, այն օրեր մութ, դաժան…*
*ըսի,—«Մեռաւ կամ գնաց»,*
*բայց հոգուս մէջ նա մնաց*
*սրբութեան պէս, անբաժան։*

*Աստղերը լուրթ երկնքէն*
*շշնջացին.—Վէրքեր թո՛ղ,*
*սիրի՛ր հեռուէն, ո՞վ քերթող,*
*մի տառապիր երկունքէն…*

Դ.

*Իրիկուն մը՝ կարեվեր*
*սիրտըս յանձնած հին բոցին,*
*մայթին վրայ փողոցին*
*կը ճեմէի վար ի վեր.*

*— Տե՛ս հմայքներըս քաշող,*
*օ՜, հաւատա որ չէ թանգ…*
*եկո՛ւր, անցո՛րդ, եկ երթանք՝*
*հնչեց ձայն մը փաղաքշող։*

*Երբ նայեցի ես նըւաղ,*
*տեսայ վշտի մը հանգոյն*
*կին մը դողդոջ և անգոյն,*
*Կապոյտ աղջիկն էր, աւա՜ղ…*

*Թիֆլիս* ԱԶԱՏ-ՎՇՏՈՒՆԻ

---

# ԹԱՏՐՈՆ

---

## ԳԱԲՐ. ՍՈՒՆԴՈՒԿԵԱՆՑ

*(Սունդուկեանցի մահուան հնգամեակին, + 16 մարտի 1912.)*

*Ովքեր հետևում են Կովկասի գրականութեան, չեն կարող ծանօթ չլինել հայ դրամատուրգ Գաբրիէլ Սունդուկեանցի գործերին։ Ո՞վ անգիր չգիտէ նրա թատրերկի (պիեսի) հերոս, ազնիւ Պեպոյի մենախօսութիւններից։*

*«Կան բանաստեղծութիւններ», որ առանց յուզմունքի անհնար է լսել։*

*Այդ բնոյթն են կրում Պէպոյի, Թիֆլիսի բազարում սոնքացած բուրժուայ Զիմզիմովներին ուղղած «ճառերը»։*

*«Պէպօն» այդ մեր հրիտասարդութիւնն է։ Նրա ներկայացման ժամանակ մենք ծիծաղում էինք, և լալիս, և ապրում։*

*«Պէպօն» միաժամանակ տեղական թատրոնի հրիտասարդութիւնն էր։ Հայ թատրոնը, շնորհիւ Սունդուկեանի թատրերկերի (պիեսների) առաջին քայլերից իսկ յաջողութիւն ունեցաւ։ Նորածին հայ թատրոնը, անմիջապէս կեանքից վերցրած իւր կենդանի տիպերով, ողջ հասարակութեան հմայում էր և ապրեցնում։ Նոյնպիսի ահագին ծառայութիւն մատուց այդ թատրերկը և վրաց նորածին թատրոնին։*

*Ես յիշում եմ «Պէպօն» վրաց բեմում 1875 թէ 76 թուին։ Այն ժամանակ դեռ ևս չկային գեղարուեստագէտներ (արտիստներ), այլ միայն սիրողներ։ Սակայն հասարակութիւնը այնպիսի հիացմունքով էր լսում այդ թատրերկը, ինչպէս և Սունդուկեանցի մի այլ կատակերգը (կոմէդիան) «Խաթաբալան», որով սիրողների մէջ ակամայից միտք յղացաւ ստեղծելու մշտական բեմ։*

*Ցետագայում շատերը այդ դերակատար սիրողներից դարձան դերասաններ։ Պէպոյի դերում ես տեսել եմ Կ. Կիպիանուն, Վ. Աբաշիձէին, Ն. Շիշնևին, որոնք 3.4 տարուց յետոյ վրաց բեմի վրայ խաղում էին որպէս կոչումնաւոր (պրոֆեսիոնալ) դերասաններ։*

*Տաղանդները սիրելու և միացնելու ոյժ ունին։ Սունդուկեանցի տաղանդը ոչ միայն դրդեց տեղական բեմը, այլ և մօտեցնել երկու ազգութիւններին։ Վրացիները և հայերը յընթացս 30 տարուայ շփւում էին «Պէպոյի» ներկայացումների միջոցաւ։ Վրաց բեմի վրայ երկար ժամանակ խաղում էր հայ դերասան պ. Ձմշկեանը և չնայելով իր վատ արտասանութեանը և վրաց լեզուին չտիրապետելուն, մեծ յաջողութիւն ունէր։ Իսկ հայ ներկայացումներին վրաց դերասաններն սկսեցին շուտ-շուտ երևալ, եթէ ոչ բեմում, գոնէ հասարակութեան մէջ։ Նրանք այստեղ ուսումնասիրում էին Սունդուկեանցին, այսպէս ասած, բուն աղբիւրից։ Ես այստեղ չեմ խօսում արդէն այն մասին, որ հայերն էլ յաճախ այցելում էին վրաց ներկայացումները՝ տեսնելու Սունդուկեանցի թատրերկերը։ Աբաշիձէն և Կիպիանին այստեղ*

